Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ Կենտկոմի
պրոպագանդայի և
ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

ԴԵԿՏԵՄԲԵՐ 24 1961




## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։

## СОДЕРЖАНИЕ







**Адрес редакции—Ереван, ЦК КП Армении, 11 этаж, ком. 60, тел. 2-58-78.**



# ԽԱՂԱՂ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՊԼԱՆՆԵՐԸ

Հանուն մարդու, հանուն մարդու բարօրության։ Այս փառահեղ նշանաբանով սկսեց ու ավարտեց իր բեղմնավոր աշխատանքը ՍՍՌՄ Գերագույն Սովետի 7-րդ սեսիան։ Սեսիան քննարկեց 4 հարց. 1. ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1962 թվականի պետական պլանի մասին։ 2. ՍՍՌՄ 1962 թվականի պետական բյուջեի մասին և 1960 թվականի պետական բյուջեի կատարման մասին։ 3. «ՍՍՌՄ և միութենական ռեսպուբլիկաների քաղաքացիական օրենսդրության հիմունքները», «ՍՍՌՄ և միութենական ռեսպուբլիկաների քաղաքացիական դատավարության հիմունքները» օրենքների նախագծերը։ 4. ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրերի հաստատման մասին։

Օրակարգի առաջին հարցի մասին սեսիայում զեկուցեց ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահի տեղակալ, ՍՍՌՄ Պետպլանի Նախագահ, դեպուտատ Վ. Ն. Նովիկովը։ Նա հանգամանորեն խոսեց այն

վիթխարի հաջողությունների մասին, որ ձեռք է բերվել ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման բնագավառում։ Միայն այս տարի մեր երկրում ծանր արդյունաբերության արտադրանքի ընդհանուր ծավալը կմեծանա ավելի քան 10 տոկոսով։ 1960 թվականի համեմատությամբ 1961 թվականին ՍՍՌՄ-ում կարտադրվի 5 միլիոն 700 հազար տոննայով շատ պողպատ, 18 միլիոն տոննայով շատ նավթ, 5 միլիոն 200 հազար տոննայով շատ ցեմենտ, 1 միլիոն 500 հազար տոննայով շատ հանքային պարարտանյութ։ Նույն ժամանակաշրջանում կավելանա նաև ժողովրդական սպառման շատ ապրանքների արտադրությունը։ Այս տարի մի նոր քայլ կատարվեց ժողովրդի կենսամակարդակը բարձրացնելու ուղղությամբ։ Երկրորդ անգամ վերացվեցին հարկերը։ Դրա շնորհիվ բնակչությունը տարեկան 400 միլիոն ռուբլու շահ ունեցավ։ Մեծացել է պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը։ Խոշոր չափերով ավելացել են աշխատավորների ռեալ եկամուտները, աճել է բանվորների և ծառայողների աշխատավարձի ընդհանուր ֆոնդը։



Սեսիայում գոհունակությամբ նշվեցին այն մեծ հաջողությունները, որոնք ձեռք են բերվել բնակարանային շինարարության գործում։ Մինչև 1961 թվականի վերջը մեր երկրում մոտավորապես 10 միլիոն մարդ կստանա բարեկարգ բնակարան։

Ընթացիկ տարում մեր երկիրը խոշոր գումարներ է հատկացրել պետական կապիտալ ներդրումների համար, որը 9,7 տոկոսով ավելի է անցյալ տարվա համեմատությամբ։ Յոթնամյակի առաջին երեք տարում ժողովրդական տնտեսության մեջ ներդրվել է մոտ 77 միլիարդ ռուբլի։

Քիչ չեն հաջողությունները նաև բարձր արտադրողական տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման ուղղությամբ։ Երկրի 120 ձեռնարկություններում արմատավորվել է արտադրության պրոցեսների կոմպլեքսային մեքենայացումը, գործարկվել են ավելի քան 700 ավտոմատ և 1.700 մեքենայացված հոսքային գծեր։

Աչքի ընկնող հաջողություններ են ձեռք բերվել նաև գյուղատնտեսության բնագավառում։ Կենսագործելով ՍՄԿԿ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումները, մեր երկրի կոլտնտեսություններն ու սովխոզները

հասան հողագործության ու անասնապահության մթերքների արտադրության հետագա աճման։

Սեսիան, նշելով ձեռք բերված հիանալի արդյունքները, հաստատեց ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության 1962 թվականի պետական պլանը, ըստ որի 1962 թվականին արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալը կմեծանա 8,1 տոկոսով, արտադրության միջոցների արտադրությունը («Ա» խումբ) կաճի 8,8 տոկոսով։ Նույն տարում կձուլվի 56 միլիոն տոննա չուգուն, 76 միլիոն 900 հազար տոննա պողպատ և կարտադրվի 59 միլիոն 200 հազար տոննա գլանվածք։

Եկող տարի է՛լ ավելի մեծ աշխատանք կկատարվի երկրի էլեկտրիֆիկացման լենինյան գաղափարների իրագործման բնագավառում։ Նախատեսվում է արտադրել 366 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, իսկ նավթի արդյունահանումը ավելացնել ավելի քան 19 միլիոն տոննայով, գազինը՝ 11 միլիարդ 500 միլիոն խորանարդ մետրով, ածխի արդյունահանումը ավելանալու է 6 միլիոն 400 հազար տոննայով։

Այս տարվա մակարդակի համեմատությամբ եկող տարի մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքի թողարկումը կաճի 12 տոկոսով։ Միայն գյուղատնտեսական մեքենաների թողարկումն ավելանալու է 18 տոկոսով։

Սեսիայում հաղորդվեց նաև այն մասին, որ եկող տարի ձեռնարկություններում պատրաստվելու և գործարկվելու են 3.240 մեքենայացված, հոսքային և ավտոմատ գծեր։ 1962 թվականի վերջում մեր երկրի մետաղամշակման ձեռնարկությունները կունենան 2 միլիոն 700 հազար մետաղահատ հաստոց և դարբնոցամամլիչ մեքենա, որը կկազմի ԱՄՆ-ի այդ սարքավորումների ժամանակակից պարկի մասշտաբների համարյա 90 տոկոսը։ 1962 թվականին 1961 թվականի համեմատությամբ թեթև արդյունաբերության զարգացման համար կապիտալ ներդրումները կավելանան 33,5 տոկոսով։

Սեսիայի կողմից հաստատված 1962 թվականի ժողովրդատնտեսական պլանով մեծ զարգացում է ապրելու մեր երկրի գյուղատնտեսությունը։ Նախատեսված է հացահատիկի գնումները հասցնել 3.855—3.907 միլիոն փթի, բամբակինը՝ 5.132 հազար տոննայի, մսինը՝ 5.530 հազար տոննայի, կաթի-

նը 32.352 հազար տոննայի։ Խոպանի շրջաններում հացահատիկի տարեկան միջին բերքը կկազմի 3 միլիոն 363 հազար փութ։

Առաջիկա տարում պլանով նախատեսված է գյուղատնտեսության զարգացման նպատակով, 1961 թվականի համեմատությամբ, 19 տոկոսով ավելացնել կապիտալ ներդրումները։ Եկող տարի կոլտնտեսություններն ու սովխոզները կստանան ավելի քան 216 հազար տրակտոր, 144 հազար հացահատիկի, եգիպտացորենի և սիլոսի կոմբայն, ավելի քան 12 հազար հողափոր մեքենա։

Յոթնամյակի 4-րդ տարում ավելի բարձր զարգացման է հասնելու մեր երկրի տրանսպորտը։ Միայն մեկ տարում, 1962 թվականին կէլեկտրիֆիկացվի ավելի քան երկու հազար կիլոմետր երկաթուղագիծ, ընդ որում էլեկտրիֆիկացվելու են Մոսկվա—Կովկաս, Մոսկվա—Լենինգրադ երկաթուղիները։ Դրա հետ միասին խոշոր աշխատանք է կատարվելու կապի զարգացման ուղղությամբ։

Կատարելով ՍՄԿՊ XXII համագումարի որոշումները, 1962 թվականին նոր թափով կծավալվի աշխատանքի արտադրողականության բարձրացման համար մղվող պայքարը։ Նախատեսված է արդյունաբերության մեջ



աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 5,6 տոկոսով, շինարարության մեջ՝ 6,8 տոկոսով։

Օրակարգի երկրորդ հարցի մասին սեսիայում զեկուցեց ՍՍՌՄ ֆինանսների մինիստր, դեպուտատ Վ. Ֆ. Գարբուզովը։

1962 թվականի պետական բյուջեով վիթխարի հատկացումներ են կատարվել աշխատավորների նյութական բարեկեցությունը բարձրացնելու, ժողովրդական կրթությունը, գիտությունը և կուլտուրան զարգացնելու համար։

ՍՍՌՄ 1962 թվականի պետական բյուջեն եկամուտների գծով հաստատված է 81 միլիարդ 918 միլիոն 641 հազար ռուբլի և ծախսերի գծով՝ 80 միլիարդ 369 միլիոն 904 հազար ռուբլի, ծախսերի նկատմամբ եկամուտները գերազանցում են 1 միլիարդ 548 միլիոն 737 հազար ռուբլի։ ՍՍՌՄ պետական բյուջեի ծախսերը կատարվում են հետևյալ կերպ. ժողովրդական տնտեսության զարգացմանը հատկացված է 32,4 միլիարդ ռուբլի, սոցիալ-կուլտուրական ձեռնարկումների համար՝ 28,7 միլիարդ ռուբլի և պաշտպանության համար՝ 13,4 միլիարդ ռուբլի։

Ինչպես տեսնում ենք բավական պատկառելի գումար է հատկացված սոցիալ-կուլ-

տուրական ձեռնարկումներին, որը 1961 թվականի համեմատությամբ 1,3 միլիարդ ռուբլով շատ է։

1962 թվականին ժողովրդական կրթության, կադրերի պատրաստման, գիտության և կուլտուրայի զարգացման վրա ծախսվելու է 12,4 միլիարդ ռուբլի, առողջապահության և ֆիզկուլտուրայի համար կծախսվի 5 միլիարդ ռուբլի, իսկ պետական սոցիալական ապահովագրության և սոցիալական ապահովության համար՝ 11,3 միլիարդ ռուբլի։ Կընդլայնվի գիշերօթիկ դպրոցների, մանկապարտեզների ու մանկամսուրների ցանցը։ Միայն բուհերում եկող տարի կսովորեն 2,9 միլիոն մարդ կամ երկու անգամ շատ, քան կապիտալիստական Եվրոպայի բոլոր բուհերում։ Բարձրագույն ուսումնական հաստատությունների և տեխնիկումների ծախսերը կկազմեն 1,8 միլիարդ ռուբլի՝ այս տարվանից 7,9 տոկոսով ավելի։ Ընթացիկ տարվա համեմատությամբ 12 տոկոսով կաճեն գիտության զարգացման հատկացումները։

Մարդու կյանքի ու երջանկության համար խոշոր դեր է խաղում բնակարանը։ Առաջիկա տարում մեր երկրում նոր թափով կծավալվի բնակարանային շինարարությունը։ Այդ



նպատակով կծախսվի 5,1 միլիարդ ռուբլի։ Բացի այդ, ձեռնարկությունները ու կազմակերպությունները իրենց ֆոնդերի և գերպլանային շահույթի հաշվին բնակելի նոր շենքեր կկառուցեն։

Այս ամենը վկայում են այն մասին, որ մեր երկրում ամեն ինչ արվում է հանուն մարդու, հանուն նրա կենսամակարդակի բարձրացման ու բարօրության։

ՍՍՌՄ 1962 թվականի պետական բյուջեով ավելի բարգավաճման կհասնի մեր ռեսպուբլիկան։ Սեսիան Հայկական ՍՍՌ-ի պետական բյուջեն սահմանել է 398.011 հազար ռուբլի։ Մեր ռեսպուբլիկայի 1962 թվականի եկամուտները 1961 թվականի համեմատությամբ կաճեն 16 տոկոսով։ Շահույթների զգալի մասը թողնվում է տնտեսության մեջ՝ նրա հետագա զարգացման, կապիտալ շինարարության արագացման համար։

Սեսիայում օրակարգի երրորդ հարցի մասին զեկուցեց Միության Սովետի Օրենսդրական նախագծումների հանձնաժողովի նախագահ, դեպուտատ Դ. Ս. Պոլյանսկին։ Նա սեսիայի քննարկմանը ներկայացրեց ՍՍՌ Միության և միութենական ռեսպուբլի-

*կաների քաղաքացիական օրենսդրության հիմունքների նախագիծը, որն այժմ հաստատված է և գործողության մեջ կդրվի 1962 թվականի մայիսի 1-ից։*

*Ջեկուցողը հանգամանորեն խոսում է այն մասին, թե ինչպես կոմունիզմի կառուցման դարաշրջանում պետականության զարգացման լենինյան սկզբունքները պահանջում են հետագայում համակողմանիորեն ծավալել սոցիալիստական դեմոկրատիան, բարելավել պետական ապարատի աշխատանքը, ուժեղացնել ժողովրդի վերահսկողությունը նրա գործունեության նկատմամբ։ Քաղաքացիական օրենսդրության հիմունքների նախագիծը, որը մշակվել է Կոմունիստական պարտիայի նոր Ծրագրի և ՍՄԿՊ XXII համագումարի որոշումներին համապատասխան, կոչված է կարևոր դեր խաղալու կոմունիստական շինարարության խնդիրների հաջող լուծման գործում։*

*«Մենք,— ասել է ՍՄԿՊ XXII համագումարում ընկ. Ն. Ս. Խրուշչովը,— պետք է դաստիարակենք հարգանք դեպի սովետական օրենքները։ Լրիվ չափով հարկավոր է օգտագործել թե օրենքի ուժը և թե հասարակական ներգործության, ազդեցության ուժը»։*



*Հայտնի է, որ քաղաքացիական օրենսդրության բնագավառում ներկայումս գործող օրենքները հնացել են։ Նախ՝ դրանք ընդունվել են 1920 թվականին և այժմ չեն կարող արտացոլել այն հսկայական փոփոխությունները, որոնք տեղի են ունեցել մեր երկրում սոցիալիզմի կառուցման շնորհիվ, ապա Ստալինի անձի պաշտամունքը խանգարում էր օրենսդրության նորացմանն ու սիստեմավորմանը։*

*Ուստի ՍՍՌՄ Գերագույն Սովետի 7-րդ սեսիան վերացրեց այդ բացը՝ ընդունելով Օրենք ՍՍՌ Միության և միութենական ռեսպուբլիկաների քաղաքացիական օրենսդրության և ՍՍՌ Միության ու միութենական ռեսպուբլիկաների քաղաքացիական դատավարության հիմունքները հաստատելու մասին։*

*Սեսիան իր աշխատանքներն ավարտեց՝ հաստատելով ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրերը։*

---

# ԳՈՐԻՍԸ ԱՅՍՕՐ

*Վարարակն գետի ձախ ափին փռված է հին Գորիսը, իսկ աջ ափին՝ նոր, շքեղ Գորիսը։ Նրանք հակապատկերներ են, որոնք պատմում են հնի և նորի, վատի և լավի մասին։*

*Ահա հին, ավերակ Գորիսը՝ խեղդված անդընդային խոր ձորի մեջ, շրջապատված բարձր թմբերով, հսկայական և ահռելի ժայռերով։ Բրգաձև էր հին Գորիսի տունը, որի տանիքը սարքված էր իրար վրա խառնիխուռն դարսված հողածածկ փայտի մի քանի սյուներից։ Հողե հատակից մինչև երդիկը ձգվում էր անտաշ, ծխապատ մի սյուն, որից կախված էր ձեթի, կամ նավթի մրոտ ճրագը։ Սա Զանգեզուրում հայտնի էր «ղարադամ» կամ տև տուն անունով, որը համարվում էր ամենաբարեկարգ տունը։ Սակայն ոչ բոլորն ունեին այսպիսի բնակարաններ։ Բնակչության մեծ մասը ապրում էր մութ խոռոչներում, այրերում և քարանձավներում, անասունների հետ միասին։*



*խավարի և տգիտության մեջ գտնվող աղքատ գյուղացին մի կերպ քարշ էր տալիս իր խղճուկ գոյությունը։*

*Ահա այդպիսին էր Գորիսը 41 տարի առաջ։*

*Ուրիշ է հիմա նոր Գորիսը։*

*Սովետական ստեղծագործ մարդիկ շատ բան են փոխել և ստեղծել այստեղ։ Նրանք տեղական բազալտի սրբատաշ քարերից կառուցել են երկհարկանի, հարմարավետ, լուսավոր բնակարաններ, կուլտուրայի տներ, հասարակական շենքեր՝ իրենց մերձակա պտղատու պարտեզներով։*

*Ամեն տարի փոխվում և ավելի է գեղեցկանում Գորիսը։ Միայն վերջին երկու տարում այստեղ կառուցվել են նոր բնակելի թաղամասեր՝ հարյուրավոր բնակելի տներով։*

*Գնալով ծավալվում է Գորիսը, տարեցտարի ավելանում նրա բնակչությունը։ 1920 թվականի 1659 բնակչի փոխարեն այժմ Գորիսում ապրում է 12 հազար մարդ։*

*Սովետական իշխանության տարիներին արմատապես փոխվել է Գորիսի տեսքը։ Այստեղ ստեղծվել են բազմաթիվ արտադրական ձեռնարկություններ, դպրոցներ, կուլտուրայի օջախներ։*

Նախասովետական Գորիսում եղած մեկ դպրոցի փոխարեն այժմ շրջկենտրոնում կան 6 միջնակարգ և ութամյա դպրոցներ, յոթնամյա երաժշտական դպրոց և գյուղատնտեսական տեխնիկում, որոնցում սովորողների թիվը հասնում է 2500-ի, իսկ գյուղերում գործում են 23 միջնակարգ և ութամյա դըպրոցներ։

Գորիսի շրջանը ունի իր թատրոնը, կինոթատրոնը, կուլտուրայի տունը, բազմաթիվ ակումբներ։ Շրջանի բանվոր-ծառայողների և կոլտնտեսականների առջև հաճախ են հանդես գալիս ժողովրդական ինքնագործունեության գեղարվեստական խմբերն ու կոլեկտիվները։ Շրջանի բոլոր գյուղերն ունեն իրենց գրադարանները՝ հարուստ գրականությամբ։ Իսկ քաղաքում գործում են 8 գրադարաններ և ակումբներ, գավառագիտական թանգարան։ Հրատարակվում է շրջանային «Որոտան» թերթը։

1920 թվականին Գորիսում միջնակարգ կրթություն ունեցողների թիվը հազիվ հասնում էր մի քանի հոգու։ Չկար բարձրագույն կրթություն ունեցող ուսուցիչ, բժիշկ կամ այլ մասնագետ։ Այժմ Գորիսում աշխատում են բազմաթիվ ինժեներներ, բժիշկներ, ուսուցիչներ, էկոնոմիստներ, ագրոնոմներ, զոոտեխնիկներ և ուրիշ մասնագետներ։





Գորիսում բարելավվել է աշխատավորների բուժսպասարկման գործը։ Անցյալի «հեքիմների» փոխարեն այժմ Գորիսում գործում են բժշկական, առողջապահական մի շարք հիմնարկներ, որտեղ աշխատում են 200-ից ավելի բժշկական աշխատողներ, որոնց մեծ մասը ունի բարձրագույն կրթություն։

Քառասունմեկ տարի առաջ Գորիսը գրեթե կտրված էր գյուղերից ճանապարհներ չունենալու պատճառով։ Անդնդախոր կիրճերով, անանցանելի ծերպերով այժմ կառուցվել են խճուղիներ և լեռից-լեռ, ափից-ափ անցկացվել կամուրջներ։ Այժմ շրջանի բոլոր գյուղերը բարեկարգ ճանապարհներով կապված են շրջկենտրոնի հետ։

Օրևանում հրատարակված թերթը, ամսագիրը կամ գիրքը նույն օրը հասնում է Գորիսի ամենահեռավոր գյուղերը՝ Դրմբոն, Մրոց, որտեղ, ինչպես գորիսեցի գրող Ա. Բակունցը կասեր, Մոսկվայից լուրը հասնում էր մեկ տարի հետո։

Ընդամենը երկու տասնամյակ առաջ Գորիսի տրիկոտաժի ֆաբրիկան քաղաքի միակ արտադրական մեծ ձեռնարկությունն էր, իսկ այժմ ստեղծված են գարեջրի, փայտամշակ-

ման և մեխանիկական գործարաններ, տեղական արդյունաբերության կոմբինատ, գորգագործական արտել և այլ ձեռնարկություններ, որոնք հսկայական օգուտ են տալիս երկրի ժողովրդական տնտեսությանը։ Այս տարի գարեջրի գործարանը պլանից դուրս երկրին տվեց կես միլիոն շիշ գարեջուր և լիմոնադ, իսկ տրիկոտաժի ֆաբրիկան՝ մեկ միլիոն կտոր տրիկոտաժեղեն, մեխանիկական գործարանը՝ ավելի քան 60 հազար և փայտամշակման գործարանը՝ 65 հազար ռուբլու արտադրանք։

Անցյալ տարի Գորիսի արտադրական ձեռնարկությունները համալրվեցին նաև երկու նոր օբյեկտով՝ Գորիս քաղաքում շահագործման հանձնվեցին փոքր էլեկտրաշարժիչների և կրի արտադրության գործարանները, որոնք ամեն տարի հայրենիքին կտան տասնյակ միլիոն ռուբլու արտադրանք։ Առտադրական, շինարարական աշխատանքներ են կատարվում նաև այս տարի։

Արագորեն առաջ է տարվում կահույքի ֆաբրիկայի, կաթնամթերքների և շինանյութերի վերամշակման նոր գործարանների շինարարությունը։ Շահագործման կհանձնվի նաև Գորիսում կառուցվող գիշերօթիկ դպրոցի շենքը։ Արդեն շահագործման են հանձնվել կոմունալ բաժնի բնակելի և հյուրանոցի խոշոր շենքերը։

Նավթի և ձեթի նախկին ճրագների փոխարեն այսօր գորիսցիների բնակարաններում բոցկլտում են էլեկտրական լամպերը։ Գորիսն ունի 3 էլեկտրակայան, որոնք քաղաքին և գյուղերին մատակարարում են էժան էլեկտրաէներգիա։ Այս տարի օգոստոսին շահագործման հանձնվեց Գորիսի էլեկտրաէնթակայանը։

Ահա այդպիսին է Գորիսն այսօր։ Բայց ավելի պայծառ են նրա հեռանկարները, նրա վաղվա օրը։

Յոթնամյակում և հետագա տարիներին շրջանի գյուղերում և Գորիս քաղաքում կկառուցվեն կինոյի, թատրոնի, կուլտուրայի պալատի, դպրոցների, ակումբների, գրադարանների, մանկապարտեզների, առողջապահական և կուլտուր-լուսավորական շատ հիմնարկներ, արտադրական նոր ձեռնարկություններ, բազմաբնակարան շենքեր, սպորտային նոր հրապարակներ։

Այս տարվա երկրորդ կեսից հինավուրց Տաթև գյուղի ստորոտով գահավիժող փրփրաբաշ Որոտան գետի վրա սկսվեցին Տաթևի էլեկտրակայանի շինարարության աշխատանքները, որոնք կավարտվեն 1965 թվականին։

Գորիսի բարձրադիր լեռներում այժմ հետազոտական լայն աշխատանքներ են տարվում՝ ընդերքի հարստությունները հայտնաբերելու և ի սպաս դնելու ժողովրդական տնտեսությանը։

Մեծ չափով կընդարձակվի բնակարանային շինարարությունը։ Մինչև յոթնամյակի վերջը Գորիսում կկառուցվի 70 հազար, իսկ 1980 թվականին՝ 170 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։ Գորիսին հարող ընդարձակ հարթավայրի վրա վեր կխոյանան նոր բնակելի տներ ու թաղամասեր, հասարակական շենքեր և կձգվեն նոր ծաղկազարդ փողոցներ, որոնք Գորիս քաղաքը կմիացնեն Վերիշեն և Բռուն գյուղերին։ Խնձորեսկ, Կորնիձոր, Տեղ, Շինուհայր, Հալիձոր և Խոտ գյուղերի աշխատավորները կտեղափոխվեն նորակառույց և բարեկարգ գյուղերը։

Բազմաթիվ բնակելի և հանրային շենքեր կկառուցվեն նաև մյուս գյուղերում։

Շինարարական այս վիթխարի աշխատանքները կատարելու համար կհատկացվեն նյութական հարուստ միջոցներ և առաջնակարգ տեխնիկա։

ՔՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ



# ԿՐՈՆԱԿԱՆ ՏՈՆԵՐԸ ԵՎ ՆՐԱՆՑ ՎՆԱՍՆԵՐԸ

Ի՞նչ են իրենցից ներկայացնում կրոնական տոները և ի՞նչ է նրանց նպատակը։ Եթե ամեն մի հավատացյալ այս հարցերը ինքն իրեն տա և համարձակորեն որոշի գտնել դրանց ճիշտ պատասխանը, ապա նա կտեսնի որ կրոնական տոները իրենցից ներկայացնում են այնպիսի կրոնական միջոցառումներ, որոնցով հոգևոր սպասավորները թունավորում ու մթագնում են միամիտ հավատացյալների գիտակցությունը։ Կրոնական տոների ժամանակ եկեղեցիներում ու սրբատեղիներում կատարվող արարողությունները՝ իրենց ողբերգություններով ու աղոթքներով կտրում են հավատացյալին իրական աշխարհից, իրական կյանքից և մտովին նրան տեղափոխում վերացական աշխարհ, դեպի անդրշիրիմյան «կյանք»։

Քրիստոնեությունը Հայաստան մուտք է գործել 300-ական թվականների սկզբներին,

որին մեծ դիմադրություն են ցույց տվել հայ շինականները։ Սակայն Տրդատ 3-րդ թագավորը, Գրիգոր քարոզիչը և երկրի մյուս իշխանավորները հրի ու սրի ուժով Հայաստանում տարածել են քրիստոնեությունը։ Նրանք, քանդելով հեթանոսական տաճարները, գրավելով նրանց գույքը, ոչնչացնելով քրմերին ու քրմապետերին, գետին տապալելով հեթանոս հայերի գթության, հողի ու բերքի աստվածուհի Անահիտի արձաններն ու դիմանկարները, կառուցում էին քրիստոնեական եկեղեցիները՝ Մարիամաստվածածնի նկարներով, Վահագնի փոխարեն կանգնեցնում էին խաչված Քրիստոսին և բոլոր հին աստվածներն ու տոները փոխարինում նորերով։ Այսպես. հեթանոս հայերի ծննդյան և ջրօրհնեքի տոնը, որ նրանք կատարում էին ամեն տարի՝ հունվարի 6-ին, նվիրված իրենց Խալդ, իսկ հետագայում Արամազդ աստվածներին, Գրիգոր-լուսավորչական եկեղեցին յուրացրեց և անվանեց Հիսուս Քրիստոսի ծննդյան տոն։ Մինչև այժմ էլ հայ եկեղեցին ծննդյան տոնը կատարում է հունվարի 6-ին։ Հայ հեթանոսական տաճարի կողմից ամեն տարի կատարվող «պասեքի» և «բաղարջ ուտիսի»



տոները, որ նրանք կատարում էին մարտապրիլին և համարում էին անասուններին ցավից հեռու պահելու տոն, միաժամանակ և հին աստվածների հարության տոն, քրիստոնեական եկեղեցին նենգափոխեց և անվանեց՝ «Քրիստոսի եղեռնական չարչարանքների ու հարության տոն»։ Այդ տոնը ինչպես հնում, այնպես էլ քրիստոնեական եկեղեցում կրում է «մեծ զատիկ» անունը։ Սաթենիկ դիցուհու համար կատարվող հեթանոսական վարդավառ տոնը քրիստոնեություն տարածող Գրիգոր քարոզիչը անվանեց «Քրիստոսի պայծառակերպության տոն»։ Հեթանոսական բարիկենդան տոնը, որ նվիրված էր փոթորիկի աստված Տուշպային, և շատ այլ տոներ իրենով արեց քրիստոնեական եկեղեցին։ Անահիտ աստվածուհուն նվիրված հեթանոսական բերքի տոնը նենգափոխելով, քրիստոնեական եկեղեցին, այն հայտարարեց «աստվածածնա տոն»։ Դարերի ընթացքում աստիճանաբար մոռացվեց այդ տոների հեթանոսական ծագումը և դրանք մնացին իբրև քրիստոնեական տոներ։

Սակայն քրիստոնեական եկեղեցին չբավարարվեց նախկինում եղած տոներով, ո-

րոնց թիվը նա շատացրեց՝ տոներ սահմանելով նաև այն հոգևոր և աշխարհիկ տերերի պատվին, որոնք իրենց գործունեությամբ օգնել էին քրիստոնեական ուսմունքի տարածմանը։ Ավելացնելով սրբերի թիվը և նրանց հետ կապված տոները, միաժամանակ եկեղեցին ավելացնում էր իր անաշխատ եկամուտները։ Ովքեր են եղել այդ սրբերը։ Դրանք եղել են խոշոր հոգևորականներ, իշխաններ, նախարարներ։ Հայ ժողովրդի պատմության մեջ եկեղեցուն ու քրիստոսին նվիրված հազարավոր անմեղ հավատացյալներ են եղել, որոնք սրբությամբ կատարել են եկեղեցու պահանջները, վարել են զրկանքներով կյանք, բայց ոչ մեկը նրանցից եկեղեցու կողմից սրբության կոչման չի արժանացել։ Մինչդեռ կյանքում բազում այլանդակություններ կատարած հոգևոր և աշխարհիկ տերերից շատերը սուրբ են հռչակվել։ Միամիտ հավատացյալները կարծում են, թե «սուրբ Հովհաննեսը», «սուրբ Կարապետը», «սուրբ Սարգիսը» և այլ սրբեր իրոք եղել են, նրանք զորավոր են, աստծու և մարդկանց միջև միջնորդներ են, որոնք իբրև թե կարող են բարեխոսել տիրոջ առաջ՝ իրենց աղեր-



սանքին, խնդրանքներին և ցանկություններին գոհացում տալու համար։

Կրոնական տոները այժմ էլ համարվում են անաշխատ եկամտի աղբյուր եկեղեցու և նրա սպասավորների համար։ Այդ տոները այժմ էլ վնասում են մարդկանց։ Նրանք մարդուն վնասում են ոչ միայն նյութապես, այլև նրան պահում են տգիտության մեջ։ Հավատացյալ մարդը դյուրահավատ է, նրա այդ թուլությունից օգտվելը հեշտ է։ Այդ է պատճառը, որ հավատացյալները խաբվում են ոչ միայն եկեղեցիների ու նրանց սպասավորների կողմից, այլև շատ բախտախնդիր շառլատանների կողմից։ Կան հասարակական աշխատանքից խուսափողներ, որոնցից ոմանք հաճախակի լինում են եկեղեցիներում, սրբատեղերում, ուխտագնացության հավաքույթներում, ձևանում են հմայողներ-գուշակներ, բախտ բացողներ և խաբեության այլ միջոցներով կորզում հավատացյալների վերջին կոպեկները։ Որոշ հավատացյալներ նույնիսկ իրենց միակ անասունը այս կամ այն «սրբին» մատաղ են անում։ Այդ օրերին կատարվում է անասունների անտեղի մորթ, աշխատանքի լքում, լինում են մեքենաների վթարներ ու մարդկա-

յին զոհեր, հարբեցողություն, դանակահարություններ և հակահասարակական այլ այլանդակություններ: Դեռ չի եղել մի տարի, որ «սուրբ Հովհաննես» կոչված ուխտատեղ գնացողները առանց մարդկային զոհի վերադառնան: Շատ ժամանակ չի անցել այն դեպքից, երբ «սրբավայրում» Լենինականի և Սպիտակի շրջանի երիտասարդների միջև կռիվ ծագեց: Ցավով ու ափսոսանքով պետք է հիշել, որ 16 դանակահարվածների մեծ մասը մահացան: Թալինի շրջանից էջմիածնի վանքը ուխտ եկած ամուսիններին, որոնք մատաղ էին բերել իրենց կովը, մեծ դժբախտություն պատահեց: Ուխտատեղից տուն վերադառնալիս կնոջ ամուսինն ընկնում է մեքենայի տակ և մահանում: Անցյալ տարի Վարդավառին ոտաբոբիկ քայլելով ամբողջ ճանապարհը, երիտասարդ ամուսինները հեռավոր մի գյուղից Գեղարդ են տանում իրենց անդրանիկ որդուն՝ կնքելու համար: Կնունքը կատարվում է սառը ջրում, և 5 օր հետո նրանք զրկվում են իրենց որդուց: Կույր հավատը այնքան է մարդուն մտքով անդամալույծ դարձնում, որ Արտաշատի Ա. գյուղի բնակիչներ Ա.-յանները հավատալով իրենց համագյուղացի մի շառլատանի, որն իրեն սուրբ



էր հայտարարել, կենդանացնելու նպատակով թույլ են տալիս իրենց վախճանված որդուն գերեզմանից դուրս հանել: Շառլատանը գերեզմանից դուրս է հանում մահացած մարդուն, քաշում նրա ականջները, փչում է քթանցքները, բայց... կենդանացնել չկարողանալով փախուստի է դիմում:

Չկան և չեն եղել մեռած կամ կենդանի սրբեր: Նրանց շուրջը կատարվող բոլոր կրոնական տոները ոչ մի օգուտ չեն տվել ու չեն էլ կարող տալ հավատացյալներին: Այդ տոները կրոնավորների ձեռքին միայն միջոց են խաբեությամբ հիմարացնելու հավատացյալներին և թալանելու նրանց ունեցվածքը:

ՍՄԿՊ Ծրագիրը պահանջում է՝ սիստեմատիկ, լայն գիտա-աթեիստական պրոպագանդա մղել, համբերատարությամբ պարզաբանել կրոնական հավատալիքների սնանկությունը, որոնք անցյալներում առաջացել են բնության տարերային ուժերի ու սոցիալական ճնշման հանդեպ մարդկանց անզորության հողի վրա, բնական ու հասարակական երևույթների իսկական պատճառները չիմանալու հետևանքով:

Ս. ԳԻՆՈՍՅԱՆ

# ՌՈՒՄԻՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Սովետական մարդիկ գիտեն, թե կարճ ժամկետում որքան շատ բան արեցին Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի աշխատավորները իրենց հայրենիքի ծաղկման համար։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ

Ժողովրդական դեմոկրատիայի տարիներին ծաղկել ու բարգավաճել է Ռումինիան։ Ռումին ժողովուրդը իր հարազատ բանվորական պարտիայի ղեկավարությամբ պատմական շատ կարճ ժամանակաշրջանում վիթխարի հաջողությունների է հասել։ Ամբողջապես վերակառուցվել և ընդլայնվել է արդյունաբերական հին ձեռնարկությունների մեծ մասը, երկրում կառուցվել են ժամանակակից տեխնիկայով հագեցված հարյուրավոր գործարաններ, ֆաբրիկաններ, էլեկտրակայաններ, շահագործման են հանձնվել բազ-



մաթիվ նոր հանքահորեր։ Ստեղծվել են արդյունաբերության մի շարք նոր ճյուղեր։ Երկրում այժմ արտադրվում են նավթաթորման և նավթամշակման, լեռնահանքային, քիմիական արդյունաբերության սարքավորումներ, տրակտորներ, բեռնատար ավտոմեքենաներ, գյուղատնտեսական ու էլեկտրատեխնիկական մեքենաներ, էլեկտրաքարշեր, քիմիական պարարտանյութեր, արհեստական ու սինթետիկ նյութեր և այլն։

Բարձր են սոցիալիստական արդյունաբերության զարգացման տեմպերը։ Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկան աճման տեմպերով անցել է Անգլիայից, Ֆրանսիայից ու եվրոպական կապիտալիստական մի շարք երկրներից։

Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկան պատմական կարճ ժամանակամիջոցում վիթխարի թռիչք կատարեց և դարձավ զարգացած ինդուստրիալ-ագրարային երկիր։

Ռումին աշխատավորների խոշորագույն հաջողությունը եղավ երկրի էլեկտրիֆիկացման տասնամյա պլանի կատարումը։ 1960 թվականին արտադրվեց 7,7 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա՝ 1950 թվականին արտադրված 2,1 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի դիմաց։ Միայն 1961

թվականի առաջին հինգ ամիսներին Ռումինիայում 1938 թվականի համեմատությամբ արտադրվել է 3 անգամ ավելի շատ էլեկտրաէներգիա։

Ստեղծվել է ռեսպուբլիկայի միասնական էներգետիկ սիստեմ։

Վերջին տասը տարում Ռումինիայի աշխատավորները կառուցել են 250 նոր գործարան, ֆաբրիկա և ցեխ։ Այդ ժամանակ արդյունաբերության արտադրանքի ամենամյա աճը կազմել է 13 տոկոս, որն ավելի քան երեք անգամ շատ է, քան վերջին նախապատերազմյան տասնամյակում։ 1960 թվականին Ռումինիայի արդյունաբերական արտադրությունը նախապատերազմյան մակարդակը գերազանցել է հինգ անգամ։ Իսկ 1961 թվականի ընթացքում շահագործման կհանձնվեն 26 նոր ձեռնարկություն ու 34 նոր ցեխ։

Ժողովրդական իշխանության տարիներին ստեղծվել են 20-ից ավելի նոր քաղաքներ ու արդյունաբերական կենտրոններ, ինչպես, օրինակ, քիմիական արդյունաբերության կենտրոններ՝ Վիկտորիան և Օնեշտը, նավթագործների կենտրոն՝ Ձեմեշը, հանքագործների կենտրոն Ուրիկանը, մետալուրգների կենտրոն Նոր Խունեդոարան և այլն։



Այժմ Խունեդոարայի կոմբինատը տարեկան տալիս է 250 հազար տոննա արտադրանք, Վիկտորիայի քիմիական կոմբինատը՝ 88 հազար տոննա արտադրանք և այլն։ Երկրի արդյունաբերության մեջ 1938 թվականի 9.000 ինժեներների փոխարեն այժմ աշխատում են 59.000 ինժեներներ։

Ժողովրդական Ռումինիայի արդյունաբերության զարգացման համար լայն հեռանկարներ են բացվում 1960—1965 թվականների վեցամյա պլանով։ Մինչև 1965 թվականը շարք կմտնեն 180 նոր ֆաբրիկա ու գործարան, 300 նոր ցեխեր։

Կոոպերացման շնորհիվ այժմ գյուղատնտեսության սոցիալիստական սեկտորին է պատկանում վարելահողերի 83,5 տոկոսը։ Գյուղացիական տնտեսությունների 85 տոկոսը մտնում են գյուղատնտեսության սոցիալիստական սեկտորի մեջ։

Երկրի գյուղատնտեսության մեջ այժմ աշխատում են 30.000 մասնագետներ, որոնց թիվը 1951 թվականի համեմատությամբ ավելի է չորս անգամ։ Գործում են գյուղատնտեսական վեց գիտահետազոտական ինստիտուտներ՝ 58 փորձակայանով։

Գյուղատնտեսությունը լայն զարգացում կապրի 1960—1965 թվականներին՝ վեցամ-

յակի ժամանակ։ 1965 թվականին երկրի
սոցիալիստական դաշտերում աշխատելու
է 100.000 տրակտոր, որը կապահովի դաշ-
տային հիմնական աշխատանքների մեքե-
նայացումը, իսկ քիմիական արդյունաբե-
րությունը գյուղատնտեսությանը կապահովի
անհրաժեշտ պարարտանյութերով։

Գյուղատնտեսական մթերքների արտա-
դրանքի ընդհանուր ծավալը 1965 թվակա-
նին 1959 թվականի համեմատությամբ կա-
ճի 70—80 տոկոսով։ Անասնաբուծական
մթերքների արտադրությունը կավելանա եր-
կու անգամ։

Ժողովրդական տնտեսության զարգաց-
ման արագ տեմպերն ապահովեցին ազգա-
յին եկամտի արագ աճ։ 1960 թվականին ազ-
գային եկամուտը մինչպատերազմյան մա-
կարդակը գերազանցեց 2—6 անգամ։

Հաջողությամբ իրականացվում է Ռումի-
նիայի բանվորական պարտիայի III համա-
գումարի կողմից ընդունված ժողովրդական
տնտեսության զարգացման 6-ամյա պլանը։

Վեցամյակի առաջին երկու տարիների
ընթացքում սոցիալիստական արդյունաբե-
րության զարգացման պլանը գերակատար-
վել է։ Այս տարի արդյունաբերական ար-



տադրանքի ծավալը 1959 թվականի համե-
մատությամբ աճել է 1,3 անգամ։

Գյուղում սոցիալիզմի կառուցման վե-
րաբերյալ բանվորական պարտիայի առա-
ջադրած խնդիրը իրագործվում է հաջողու-
թյամբ։ Գյուղատնտեսության կոոպերացու-
մը տվել է իր դրական արդյունքը՝ ավելա-
ցել է գյուղատնտեսական մթերքների ար-
տադրությունը, որը հնարավորություն է
տալիս լրիվ բավարարելու աշխատավորնե-
րի պահանջմունքները և արդյունաբերու-
թյունը ապահովելու հումքով։

Ժողովրդական կարգերի տարիներին
զգալիորեն բարելավվել են բնակչության
բարեկեցության և կենսամակարդակի պայ-
մանները։

Միայն վերջին 5 տարիների ընթացքում
կառուցվել և աշխատավորությանն է հանձ-
նըվել 94.000 բնակարան, 1956—60 թվա-
կաններին գյուղում կառուցվել է 330.000
բնակարան։ 1961 թվականի ընթացքում շա-
հագործման կհանձնվի 37.000, իսկ 1965
թվականին՝ 300.000 բնակարան։

Մեծ ուշադրություն է դարձվում աշխա-
տավորների ռեալ աշխատավարձի բարձ-
րացման վրա։

Բանվորների, ինժեներների, տեխնիկա-

կան կադրերի, ծառայողների ռեալ աշխատավարձը 1965 թվականին 1959 թվականի համեմատությամբ կբարձրանա 40—45 տոկոսով, իսկ գյուղացիության ռեալ եկամուտները կավելանան 40 տոկոսով։

Արմատապես բարելավվել է բնակչության բուժսպասարկման գործը։ Յուրաքանչյուր տարի երկրի սանատորիաներում և հանգստյան տներում բուժվում և հանգստանում են 400.000 աշխատավորներ և 100.000 երեխաներ։

Ժողովրդական իշխանությունը վերացրեց կապիտալիզմի թողած ծանր ժառանգությունը՝ անգրագիտությունը, սոցիալական հիվանդությունները, թոքախտը և այլն։ Երկրում իրականացված է կուլտուրական ռևոլյուցիա։ Հաջողությամբ զարգանում են լուսավորությունը, գիտությունը, արվեստը, գրականությունը։

Մինչպատերազմյան ժամանակաշրջանի 29.000 աշակերտների փոխարեն 1960 թվականին Ռումինիայի միջնակարգ հանրակրթական դպրոցներում սովորողների թիվը կազմում էր 200.000, իսկ պրոֆեսիոնալ դպրոցներում և տեխնիկումներում սովորողների թիվը 54 հազարից բարձրացել է 149 հազարի։



Այժմ Ռումինիայում գործում են 42 բարձրագույն ուսումնական հաստատություններ, որոնք ընդգրկում են 131 ֆակուլտետներ։ 1960 թվականին միայն առաջին կուրս ընդունվող ուսանողների թիվը հավասար էր 1938 թվականի բոլոր ուսանողների թվին։

Ամբողջ երկիրը ծածկված է կուլտուր-լուսավորական հիմնարկների խիտ ցանցով։ Լայն զարգացում են ստացել ռադիոն, հեռուստատեսությունը, կինոն և թատերական արվեստը։ Ռեսպուբլիկայում գործում են շուրջ 12 հազար կուլտուրայի տուն և ընթերցարան։

Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի կուլտուրական կյանքում հսկայական դեր է խաղում 1948 թվականին ստեղծված Գիտությունների Ակադեմիան, որն իր մեջ ընդգրկում է 36 ինստիտուտ և գիտահետազոտական կենտրոններ։

Ժողովրդական Ռումինիայի զարգացման մեծ գործին հսկայական օգնություն է ցույց տալիս Սովետական Միությունը, որոնց ժողովուրդների եղբայրական բարեկամությունը անխախտ է ու հավերժ։

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Լենինյան պարտիայի XXII համագումարի պատմական նշանակությունը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի հաշվետվությունը Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարին, *զեկուցում Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարում, Հայպետհրատ, 1961 թ.։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— *Եզրափակման խոսք* ՍՄԿՊ XXII համագումարում, *Հայպետհրատ, 1961 թ.։*

Կոմունիզմ կառուցողների համագումարը, *տպագրված «Պրավդա»-ի 1961 թվականի հոկտեմբերի 22-ի համարում։*

Ամեն ինչ մարդու, նրա բարօրության համար, *«Ս. Հ.»-ի 1961 թվականի նոյեմբերի 24-ի առաջնորդող հոդվածը։*

## 2. Կոմունիզմը կարելի է կառուցել աշխատանքով և միայն միլիոնների աշխատանքով

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— ՍՄԿՊ Կենտրոնական Կոմի-



տեի հաշվետվությունը Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարին, *զեկուցում Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարում, Հայպետհրատ, 1961 թ.։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագրի մասին, *զեկուցում Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարում, Հայպետհրատ, 1961։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— Եզրափակման խոսք պարտիայի XXII համագումարում, *Հայպետհրատ, 1961։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագիրը, *Հայպետհրատ, 1961։*

Բոլոր ուժերը համագումարի որոշումների կենսագործմանը, *«Ս. Հ.»-ի 1961 թվականի նոյեմբերի 28-ի առաջնորդող հոդվածը։*

ՍՄԿՊ XXII համագումարի որոշումների կենսագործման նշանաբանով, *նյութեր, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի դեկտեմբերի 2-ի համարում։*

## 3. Կոմունիստական բարոյականության հիմնական սկզբունքն է՝ մարդը մարդուն բարեկամ է, ընկեր և եղբայր

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Պրոլետարական կուլտուրայի մասին, *Երկեր, հատոր 31, էջ 388—390, Հայպետհրատ, 1952։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Երիտասարդության Միությունների խնդիրները, *Երկեր, հատոր 31, էջ 343—366, Հայպետհրատ, 1952։*

Պարտիայի խնդիրները գաղափարախոսության, դաստիարակության, կրթության, գիտության ու կուլտուրայի բնագավառում, *ՍՄԿՊ Ծրագիր, էջ 141—147, Հայպետհրատ, 1961։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագրի մասին, *զեկուցում ՍՄԿՊ XXII համագումարում, 4-րդ բաժ., 4-րդ պար., Հայպետհրատ, 1961։*

Դաստիարակել կոմունիզմին արժանի սերունդ, *«Ս. Հ.»-ի 1961 թվականի նոյեմբերի 25-ի առաջնորդող հոդվածը։*

## 4. ՍՄԿՊ-ն կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարի կազմակերպիչն ու ոգեշնչողն է

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Ճառ Կոմունիստական պարտիայի դերի մասին, *արտասանած Կոմինտերնի II կոնգրեսում, Երկեր, հատոր 31, էջ 283—288, Հայպետհրատ, 1952։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— Լենինյան պարտիան կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարի կազմակերպիչն է, *ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, Հայպետհրատ, 1961։*





Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— Եզրափակման խոսք պարտիայի XXII համագումարում, *Հայպետհրատ, 1961։*

Ֆ. Ռ. ԿՈԶԼՈՎ.— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կանոնադրության փոփոխությունների մասին, *զեկուցում ՍՄԿՊ XXII համագումարում, Հայպետհրատ, 1961։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կանոնադրությունը, *Հայպետհրատ, 1961։*

## 5. Նոր տարին նշանավորենք աշխատանքային նոր հաջողություններով

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— Եզրափակման խոսք ՍՄԿՊ XXII համագումարում, *Հայպետհրատ, 1961։*

ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ.— Ճառ՝ արտասանած ՍՄԿՊ XXII համագումարում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի 24-ի համարում։*

Օրենք ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1962 թվականի պետական պլանի մասին, *ընդունված ՍՍՌՄ հինգերորդ գումարման Գերագույն Սովետի 7-րդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի դեկտեմբերի 10-ի համարում։*

Օրենք ՍՍՌՄ 1962 թվականի պետական բյուջեի մասին, *ընդունված ՍՍՌՄ հինգերորդ գումարման Գերագույն Սովետի 7-րդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի դեկտեմբերի 10-ի համարում։*

---

# ՑՈՒՑԱԿ

## «Ագիտատորի բլոկնոտ»-ում 1961 թվականին տպագրված նյութերի

### ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՄԵԹՈԴԱԿԱՆ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

## ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ



## ՏԵՂԵԿԱՏՈՒ ԲԱԺԻՆ

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ



## ԴԻՏՈՂԱԿԱՆ ՆՅՈՒԹԵՐԻ ԱՆԿՅՈՒՆ



## ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ



## ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ



## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԹԵՄԱՆԵՐ







## ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ



## ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

## ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ



## ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻՑ







## ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ



## ԳԻՏԱ-ԱԹԵԻՍՏԱԿԱՆ ԹԵՄԱՆԵՐ



## ԿՈՒԼՏՈՒՐԱ ԵՎ ԱՐՎԵՍՏ



## ԱԳԻՏԱՏՈՐԻ ՕՐԱՑՈՒՅՑ





Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է

«Ագիտատորի բլոկնոտ»-ի 1962 թվականի բաժանորդագրությունը:

1 ամիսը — 15 կոպ.

6 ամիսը — 90 կոպ.

12 ամիսը — 1 ռուբ. 80 կոպ.

Մեկ համարը — 8 կոպ.

«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 24 1961 г.

ՎՖ 02001 Պատվեր 654 Տպաքանակ 8193

Հանձնված է արտադրության 15/XII 1961 թ.:
Ստորագրված է տպագրության 21/XII 1961 թ.:

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8:

Գինը 3 կոպ.